## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Սամուէլ Մուրատեան վարժարանի տեսչութիւնը, Մխիթարեան Միաբանութեան եւ վարժարանի անմոռանալի բարեկամին, հանգուցեալ Տոքթ. Արամ Ճինճեանի քառասունքին առթիւ՝ Մայիս 24ի կիրակին, առաւօտեան ժամը 10·30ին, հոգեհանգստեան պատարագ եւ պաշտօն պիտի կատարէ վարժարանի Մատրան մէջ:

Փափաքողները կրնան ներկայ գտնուիլ:

×

Արաքսի, Սեդա, Արմիկ Զամալեան, Եղիա Թաշլաքճեան, Թորոսեան եղբայրները եւ քոյրերը, իրենց ընտանիքներով, կը յայտնեն թէ այս Կիրակի (Մայիս 3), Փարիզի Ս. Հ. Մ. եկեղեցիին մէջ, Սուրբ պատարագէն ետք, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի ի յիշատակ իրենց մօր, զոքանչ մօր, մեծ մօր, քրոջ եւ ազգականին՝

ՈՂԲ. ՏԻԳՐԱՆՈՒՀԻ ԹԱՍԼԱՔՃԵԱՆԻ
(Ծնեալ Թորոսեան)

մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգող բարեկամներն եւ համակիրները:

×

Այրի Տիկին Աննիկ Աբրահամեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Յակոբ Գուլումճեան, Ժամկոչեան, ընտանիքները կը ծանուցանեն թէ այս Կիրակի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն, հօր, Ահարոն Աբրահամեանի մահուան քառասունքին առթիւ: Ալֆորվիլի Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյ մէջ: Հանգուցեալին յիշատակը յարգողները կը հրաւիրուին:

×

Այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի ողբացեալ

ՎՐԹՑՐ ԱՀԱՐՈՆԵԱՆԻ

յիշատակին:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Մարսէյլի Ամասիոյ Հայր. Միութեան վարչութիւնը, յանուն բոլոր հայրենակիցներուն իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ հայրենակից Այրի Տիկին Մարիամ Ալեքսանեանի մահուան առթիւ, իր զաւակներուն եւ բոլոր պարագաներուն:

×

Վիէն.— Տէր եւ Տիկին Դ. Երամեան իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն ողբ. Լեւոն Քէշիշեանի ընտանեկան պարագաներուն, եւ այս տխուր առթիւ փոխան ծաղկեպսակի հազար ֆրանք կը նուիրեն Վիէնի Կ. Խ. դպրոցներուն:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Քէշիշեան եւ զաւակները, ինչպէս նաեւ Լութֆիկ Քէշիշեան, Դայեան, Ճզիկեան, Խլոյեան եւ Բաղդասարեան ընտանիքները իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր անոնց որ իրենց մասնակցութիւնը բերին ԼԵՒՈՆ ՔԷՇԻՇԵԱՆի յուղարկաւորութեան:

## ՀԱՅԿ. ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Սեբաստիոյ նահանգային ՄՈՒՐԱՏ Ուսումնասիրաց Միութեան Մարսէյլի մասնաճիւղի կողմէ:

Ի նպաստ իր որդեգրած սաներուն:

Այս Կիրակի առաւօտ ժամը 9ին, Նօայլ սինէմային մէջ:

39, Րիւ տը լ'Արպրը, Մարսէյլ:

Պիտի ցուցադրուի «ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ» եւ Վաղղէն Ա. Կաթ.ի Օծումը Էջմիածնի մէջ:

## ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ

20, RUE JEMMAPES

Պաշտամունք՝ այս Կիրակի ժամը 9·30ին՝ Սէն Ժերոմ, ժամը 10·45ին Մարսէյլ: կը խօսի Վեր. Յ. ՀԵԼՎԱՃԵԱՆ:



Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## Ն"ՄԱՅԻՍ 28"Ը ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

30 Մայիս, Շաբաթ գիշեր (մինչեւ լոյս):

Վեցերորդ Թաղապետարանի սրահներուն մէջ, Փլաս Սէն Սիւլփիս:

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԵՐԵՍՆԱՄԵԱԿԸ

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Վիէնի մասնաճիւղին, Մայիս երեքին, կէսօրէ ետք ժամը երեքին Սէրքլը Կաթոլիկ սրահին մէջ:

Կը նախագահէ ընկերուհի Ա. ՄԱՂԱՔԵԱՆ: Կը խօսի ընկերուհի Ա. ՍԻՍԼԵԱՆ (Կրընոպլէն):

Գեղարուեստական խնամուած բաժին մասնակցութեամբ երեք դպրոցներու աշակերտութեան եւ Հ. Յ. Դ. Նոր Սերունդին:

Մուտքը ազատ է:

## ՀԱՆԴԷՍ ԵՒ ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Կապ. Խաչի Փորթ տ'Իթալիի մասնաճիւղի կողմէ:

3 Մայիս, Կիրակի կէսօրէ վերջ ժամը երեքին, Կղերականներու սրահին մէջ,

32, RUE DANTON. KREMLIN-BICETRE

Կը ներկայացուի «ԹՈՐՈՍ ԾԱՌԱՆ»

Նոր Սերունդի Առնուվիլի «Կառավարենց» խումբին կողմէ:

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին.—

ԵՐԳ՝ Օր. Ա. Քէօսէեան եւ Պ. Մ. Գարակէօզեան:

ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ՝ Օր. Շ. Յովհաննէսեան:

ԿՈՎԿԱՍԵԱՆ ՊԱՐ՝ Պ. Ա. եւ Օր. Պաղտասարեան:

Մուտք 200 ֆրանք:

Հաղորդակց. միջոցներ.— Իջնել Փորթ տ'Իթալի, հանրակառք թիւ 185 եւ 147 եւ իջնել Րիւ Քոնվանսիոն:

ԱՊՐԻԼ 11–24Ի 44ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՒ

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍԳԱՏՕՆ

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. ՏԷՍԻՆԻ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ:

Մասնակցութեամբ՝ Վասպուրականի Երիտասարդաց երկսեռ միութեան, Տարօն – Տուրուբերան Հայր. Միութեան, Սեբաստիոյ «Մուրատ» Ուսումնասիրաց Միութեան, Խարբերդի Հայր. Միութեան, Կրօնական Ընկերակցութեան, Ֆ. Բանակի Նախկին Ռազմիկներու Միութեան, Հայ Կամ. եւ Մարտիկներու Միութեան, Ֆր. Կապ. Խաչ, Հ. Մ. Ը. Մ., կրթական մարմին, Հ. Յ. Դաշնակցութեան:

Այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան մէջ:

Կը նախագահէ Պ. Լ. ԱՍԱՏՈՒՐԵԱՆ

Կը բանախօսէ Պ. Ա. ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ

Գեղարուեստական պատշաճ բաժին:

ԾԱՆՕԹ.— 1 Մայիս 1959 Ուրբաթ առաւօտ ժամը 8·30ին հոգեհանգստեան պաշտօն եւ պատարագ, ընդհ. նահատակաց համար:

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, RUE THOUIN

Այս Կիրակի, ժամը 10·30ին Հայ Կաթոլիկէ եկեղեցիին մէջ, Հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ եւ քարոզէ ԳԵՐՅԱՐԳԵԼԻ ՊՕՂՈՍ Վ. ԱՐԻՍ քաղաքապետ Պուրճ Համուտի ի Պէյրութ:



## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

### ՄԱՐՍԷՅԼ

Գրական Ասուլիս նուիրուած Կ. Փօլատեանի նոր վէպին՝ ԱՐԾԻՒՆԵՐԸ ԱՆԱՊԱՏԻՆ ՄԷՋ:

Այս Չորեքշաբթի իրիկուն, ժամը 21ին, Ֆրանս. Համալսարանի ամփիթատրոնը (40 Ալէ Կամպէթա):

Կը նախագահէ Պ. Արամ Թէրզիպաշեան, վէպը կը ներկայացնէ Պ. Ասատուր Քէօսէեան: Կը վերլուծեն Պ.-Պ. ՇԱՒԱՐՇ ԹԱՇՃԵԱՆ, ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱՂԱՅԵԱՆ եւ ԺԻՐԱՅՐ ՄԻՐԻՃԵԱՆ:

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ – ԹԱՏԵՐԱԿԱՆ

## ՋՈՒԱՐԹ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Մարսէյլ – Պոմոնի Նոր Սերունդի ««Քրիստափոր» խումբի կողմէ:

Այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3·30ին,

SALLE D'ATHÉNÉE

15, AVENUE DE LA VICTOIRE, NICE

Կը ներկայացուի կատակերգութիւն մը՝ ԵՐԿՈՒ ԽՈՒԼԵՐԸ

Կը բեմադրուի առաջին անգամ ըլլալով՝ ՀԱՅ ԳԵՂԶԿԱԿԱՆ ՊՍԱԿ

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ, ժամը 20·30ին, Միշակեանի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, մէթրօ Քատէ: Օրակարգ.— Շրջ. ժողովի օրակարգի հարցերու քննութիւն:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Կիրակի կէսօրէ ետք, ժամը երեքին, ընկեր Շ. Խաչատուրեանի բնակարանը, հասցէ.— 7 Բէ փիէր ժէզ: Ներկայ պիտի ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչ: Պարտաւորիչ ներկայութիւն: Ճշդապահ ըլլալ:

### ԺՈՂՈՎԻ ՀՐԱՒԷՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Մեծ Եղեռնի Սգահանդէսի կազմակերպիչ մարմինը կը հրաւիրէ, ժողովի, բոլոր հայրենակցական եւ երիտասարդական Միութեանց ներկայացուցիչները, այս երկուշաբթի 4 Մայիս, երեկոյեան ժամը 9ին Հ. Բ. Ը. Մ. սրահը: (Րիւ Վանթիւր 19ա):

ԱՐԺԱՆԹԻՆԻ մէջ կացութիւնը զարգանալ ծանրացաւ՝ ընդհանուր գործադուլի եւ նախարարական տագնապով: Փերոնական եւ համայնավար բանուորական կազմակերպութիւնները ընդհանուր գործադուլ հռչակեցին: Միւս կողմէ եօթը նախարարներ հրաժարեցան: Բանակը դիրք կը բռնէ երկրին կարեւոր կեդրոններուն մէջ՝ որեւէ անակնկալի առաջքն առնելու համար, մինչ Նախագահ Ֆրոնտիսի կը յայտարարէր.— Կառավարութեան քաղաքականութիւնը փոփոխութեան պիտի չենթարկուի: Գալով նախարարարական տագնապին՝ բաւ թէ պարզ փոփոխութիւն մըն է ան:

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ Պատերազմական նախարար Շթրաուս Լոնտոն երթալով խորհրդակցութիւններ ունեցաւ անգլիացի իր պաշտօնակիցին հետ, որմէ ետք հրատարակուած զեկոյցի մը մէջ կը շեշտուի թէ երկու երկիրները համաձայնած են նոր հրասայլեր շինել՝ որոնք պիտի դրուին Եւրոպայի զանազան երկիրներու տրամադրութեան տակ: Հրասայլերու պատրաստութիւնը կրնայ ըլլալ նաեւ Ամերիկայի մէջ:

ԻՏԱԼԻՈՅ եւ Ամերիկայի միջեւ խօսակցութիւնները սկսան: Գլխաւոր նիւթերն են.— Ա) Իտալիոյ մասնակցութիւնը Ժընեւի ժողովին, Բ) Հրթիռներու արձակարաններու հարցը, Գ) Միջերկրականի խնդիրը:

ՃԱՓՈՆԻ կառավարութիւնը խորհրդային սպառնալիքին պատասխանելով յայտարարեց թէ Մոսկուա իրաւունք չունի Թոքիոյի զինուորական քաղաքականութեան խառնուելու: Խ. Միութիւնը բողոքած էր որ Ճափոն ընդունած է ամերիկեան արձակարաններ հաստատել:

ԻՆՏՈՆԵԶԻՈՅ հանրապետութեան նախագահը՝ Սուքառնօ ընդունուեցաւ Պապին կողմէ:

ՀՈԳԵԳԱԼՈՒՍՏԻ առթիւ «Յառաջ» Երեքշաբթի լոյս չի տեսներ: Մեր յաջորդ թիւը՝ Չորեքշաբթի: Խմբագրատունը փակ է Երկուշաբթի:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Սամուէլ Մուրատեան վարժարանի տեսչութիւնը, Միխիթարեան Միաբանութեան եւ վարժարանի անմոռանալի բարեկամին, հանգուցեալ Տոքթ. Արամ Ճինճեանի քառասունքին առթիւ՝ Մայիս 24ի կիրակին, առաւօտեան ժամը 10·30ին, հոգեհանգստեան պատարագ եւ պաշտօն պիտի կատարէ վարժարանի Մատրան մէջ: Փափաքողները կրնան ներկայ գտնուիլ:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Արեգ Բարեկամեան, Տէր եւ Տիկին Գալուստ Բարեկամեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Պետրոս Շահպազեան եւ զաւակը եւ ընտանեկան պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր եւ մեծ հօր՝

ԲԱՐԵԿԱՄ ԲԱՐԵԿԱՄԵԱՆԻ

մահուան առթիւ:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ 30 ԱՄԵԱԿԸ

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Լիոնի մասնաճիւղի:

Այս Շաբաթ 23 Մայիս, երեկոյեան ժամը 8·30ին, 26 րիւ Տիւնուար, «Սթիւտիօ Քրէքի» սրահը:

Կը բանախօսէ՝

### ԸՆԿ. ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

Գեղարուեստական խնամուած բաժին: Իր սիրայօժար մասնակցութիւնը կը բերէ Լիոնի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի երգչախումբը, ղեկավարութեամբ Պ. Ա. ԱԲՐԱՀԱՄԵԱՆԻ:

Կենդանի պատկեր «Օրուան խօսքը»:

Մեներգ.— ՏԻԿԻՆ Մ. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ եւ Օր. Ա. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ:

Արտասանութիւն.— Օրիորդներ ԲՐԱԲԻՈՆ ՏԱՊԱՂԵԱՆ, ՍԻՐԱՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ, Օր. ՍԱՐԳԻՍԵԱՆ եւ Շ. ՂԱԶԱՐԵԱՆ: Ջութակ.— Պ. ՅՈՎՀ. ՊԷՐՊԷՐԵԱՆ:

Հայկական պար «Թամարա» զոյգպար:

Տրամախօսութիւն.— «Կեցցէ մեր լեզուն»:

Մուտքը ազատ է:

### ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Փակուած են կայանի արձանագրութիւնները իսկ անոնք որոնք արդէն արձանագրուած են, պէտք է դիմեն կեդրոնին, հարկ եղած տեղեկութիւնները ստանալու եւ պոռֆասիոնի թերթիկները յանձնելու համար, երկուշաբթի, չորեքշաբթի եւ ուրբաթ օրերը ժամը 13էն 14 եւ երեկոյեան ժամը 18էն 20, րիւ Մէյրան 5, հեռ. Թռիւտէն 27-35:

×

### ԿԱՊ. ԽԱՉԻ 30ԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Կեդր. վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Պ. Գ. Փաթթուկեանէ հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Սատրղեանէ երկու հազար, Տիկին Տաւուտեանէ հազար, Ա. Ի. հազար ֆրանք:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Յառաջիկայ դասախօսութիւնը տեղի կ'ունենայ այս Չորեքշաբթի երեկոյ, Քատէ սրճարանի վերնայարկը: Դասախօսն է Պ. Պ. ՆԱԶԶԱՐԵԱՆ: Նիւթն է.— «Հայաստանի տնտեսութեան ներկայ տուեալները»:

Մուտքը ազատ է:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՅՈՒՆԻՍ 8ԻՆ, թատերական ներկայացում Շիրվանզադէի ծննդեան հարիւրամեակին առթիւ, նախաձեռնութեամբ՝ Գէորգ Տէրվիշեանի եւ մասնակցութեամբ ծանօթ արուեստագէտներու:

Կը ներկայացուի՝ ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ:

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ԿԵԴՐՈՆ

Վիճաբանական ժողով կազմակերպուած երիտասարդներուն համար:

Նիւթ՝ «Ի՞նչ կը սպասեմ հայ երիտասարդական կազմակերպութենէ մը»:

«Ce que j'attends d'une association de jeunes Arméniens

CENTRE D'ÉTUDES ARMÉNIENNES
JEUDI. 21 MAI 1959 A 21 HEURES
AU CAFÉ CADET, 1er ÉTAGE, MÉTRO CADET

### ԼԻՈՆ, ԸՆԴ. Հ. ԺՈՂՈՎԻ ՀՐԱՒԷՐ

Լիոնի եւ շրջանի Նախկին Հայ Մարտիկներու Միութեան ժողովը կը գումարուի յառաջիկայ Ուրբաթ՝ Մայիս 22, ժամը 20·30ին, Նորականոյց եկեղեցւոյ սրահին մէջ, 295 րիւ Պուալօ:

Անդամներուն ներկայութիւնը պարտաւորիչ է: Կարեւոր օրակարգ եւ նոր վարչութեան ընտրութիւն:

## ԾՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս Հինգշաբթի ժամը 21ին, Հայ Մշակոյթի Տան մէջ:

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի Լիոնի վարչութիւնը, ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամուհիները այս Չորեքշաբթի, ժամը 16ին, Յոյներու սրահը: Կարեւոր օրակարգ:

### ԼԻՈՆԱՀԱՅԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկն. Միութիւնը ամէն ջանք կը թափէ հասոյթի միջոցներ ստեղծելու Լիոնի եկեղեցւոյ շինութեան համար.—

ՄԱՅԻՍ 24ին Հոբլոժի սրահներուն մէջ իրիկուան ժամը 8·30ին պիտի ներկայացուի, նոր պատրաստուած ֆիլմ մը Հայաստանի մէջ, զուտ հայկական կեանքէ «Կայօն»:

ՄԱՅԻՍ 31ին մեծ պարահանդէս մը վիճակահանութիւն:

Մանրամասնութիւնները յաջորդով:

## ԵՂԱՆԱԿԻ ԱՄԵՆԱՇՔԵՂ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

կազմակերպուած

ՍԱՄՈՒԷԼ - ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԾՆՈՂՔՆԵՐՈՒ եւ ՄՈՒՐԱՏ - ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԵԱՆՑ ՄԻԱՑԵԱԼ ՈՒԺԵՐՈՎ:

ԿԻՐԱԿԻ, 7 ՅՈՒՆԻՍ, ԺԱՄԸ 16էՆ ՍԿՍԵԱԼ

ՊԱՐԱՆՑԻԿ ԵՐԵԿՈՅԹ, ԺԱՄԸ 20էՆ ԵՏՔ

վարժարանի դալարազեղ պարտէզներուն մէջ:

## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

### ԼԻՏԻԱ ԿԱՐԻՆ

Յունիս 10ին, Չորեքշաբթի, երեկոյեան ժամը 9ին,

ECOLE NORMALE DE MUSIQUE

78, Rue Cardinet. Paris

Կը մասնակցին

ՍԷՐԺ ԳՈԼՕ (բամբ ջութակահար)

ՄՈՆԻՔ ՄԱԹԱՆԷԸ (դաշնակահար)

Երեկոյթը նուիրուած է գերման վիպական երաժշտութեան (ՇՈՒՄԱՆ, ՊԸՐԱՄՍ):

Առաջին ունկնդրութիւն ՄԱՐՍԷԼ ՏԸ ԼԱՆՈՒԱՅԻ վերջին մէկ գործին. Սիւլամիթ:

ՄՈՍԿՈՒԱ. Հրատարակուած Համայնավար կուսակցութեան պատմութեան առձեռն գրքին մէջ, առաջին անգամն ըլլալով մանրամասն ճշգումներ կան Նիկոլա Եժովի կեանքին եւ վախճանին մասին: Եժով Խ. Միութեան ներքին նախարար եւ ապահովութեան պետն էր 1936էն 1938: Բերիա անոր տեղը անցած էր 7 Դեկտեմբեր 1938ին: Նոյն օրը մամուլը յայտարարած է թէ Եժով գործավար նշանակուած է Խ. Միութեան նաւարկելի ուղիներուն. Հանրութեան մէջ երեւցած է, վերջին անգամ, 10 Ապրիլ 1939ին: Այս թուականէն ետք Եժովը տեսնող չէ եղած եւ մինչեւ այսօր տրուած պաշտօնական մեկնութիւնը այն էր թէ՝ խենդութեան նոպայի մը մէջ, անձնասպան եղած է: Ըստ նոր առձեռնի, «Եժով՝ ինչպէս յետագային Բերիա, ոճրագործներու պատիժին արժանացած է»: Արեւմուտքը Եժովի անունով կը յիշուի — Եժովշինա— Խ. Միութեան մէջ կատարուած ամէնէն զզուելի քաղաքական մաքրագործումներէն մէկը: Պաշտօնագիրք ըլլալէն քանի մը ամիս առաջ, Հրացանի բռնել տուած էր իր նախորդը՝ Եակոտա, «Խ. վարչակարգի թշնամի եւ վարձկան լրտես կայսերական պետութեանց» ամբաստանութեան տակ:

ՖՐԱՆՍԱՅԻ դրամափոխութեան պետական դրասենեակը պաշտօնապէս յայտարարեց թէ՝ Յունիս մէկէն սկսեալ, արտասահման գացող զբօսաշրջիկները իրաւունք պիտի ունենան՝ անձ գլուխ, յիսուն հազար ֆրանքի փոխարժէք տարադրամ (տըվիզ) ստանալու: Այս գումարէն զատ պիտի կարենան հետերնին տանիլ 20.000 ֆրանք: Տարադրամի այս յատկացումը տարեկան է. կարելի է, ըստ կամս, մէկ կամ զանազան անգամներով օգտագործել, առանց սակայն որոշուած ընդհանուր գումարը անցնելու մէկ տարուան ընթացքին:

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Փոթորիկ խումբի ժողովը այս Հինգշաբթի իրիկուն, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Տոքթ. Գուրգէն Մեծատուրեան և զաւակները, Օր. Շուշան Մեծատուրեան կը ծանուցանեն թէ ողբաց. Տիկին ԱՂԱՒՆԻ ՄԵԾԱՏՈՒՐԵԱՆի մահուան առաջին տարելիցին առթիւ հոգեհանգստեան մասնաւոր պաշտօն պիտի կատարուի այս Երեքշաբթի առաւօտեան ժամը 10ին, Փարիզի Հայոց եկեղեցին, 15 Րիւ Ժան Կուժօն:

Կը հրաւիրուին յիշատակը յարգողները:

×

Ողբացեալ Տիկին Ժպտուն Ոսկերիչեանի յիշատակին (ծնեալ Զուքասըգեան) մահուան տարելիցին առթիւ, Տիրան Ոսկերիչեան, Վահրիճ եւ Վարդանոյշ Կէօքճէեան կը ծանուցանեն կսկծալի սրտով որ իրենց յաւէտ անմոռանալի կնոջ եւ զաւկին՝ ողբ. ԺՊՏՈՒՆԻ մահուան Ա. տարելիցին առթիւ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի կիրակի առտու Մայիս 31ին Հայ. Առաք. Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին:

Իր յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ ըլլալ:

Յաւարտ արարողութեան, այցելութիւն պիտի կատարուի հանգուցեալի դամբարանին, Սիմըթիէր Փարիզիէն տը Փանթէն, 139րդ տիվիզիօն, 9րդ լինեը, թիւ 7, անթրէ տէ Փըթի Փոն:

×

Իրեններուն կողմէ կը տրուին նուէրներ՝ հինգ հազար ֆրանք Փարիզի Աղքատախնամին եւ հինգ հազար ֆր. Ծերանոցին: Ստանալ Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիի դրասենեակէն:





Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ԼՐԱՏՈՒ ԱՐՈՒԵՍՏԻ

*Այս Հինգշաբթի, ժամը 21ին կրօնական երաժշտութեան համերգ Նէօյիի Ս. Պետրոս եկեղեցւոյ մէջ, (մեթրօ Սապլօն) որուն հրաւիրուած է մասնակցելու Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ երգչախումբը, ղեկավարութեամբ Ա. Պարթեւեանի: Պիտի մեներգէ Օր. Պիւլպիւլեան:*

*Համերգի յայտագրին կը մասնակցին եկեղեցական երգերով* Սէնթ էօսթաշի *խումբը, Փարիզի ռուս ուղղափառ, Մարոնի եւ Աւետարանական եկեղեցիներու երգչախումբերը:*

*Համերգը կազմակերպուած է Արեւելք-Արեւմուտք ընկերակցութեան կողմէ:*

*Այս առթիւ բանախօսութիւններ կազմակերպուած են նաեւ երեքշաբթի 26 եւ Չորեքշաբթի 27 Մայիս, երեկոյեան,* 121 Ավընիւ տը Նէօյի, Սէն Փիէր *սրահին մէջ:*

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

*Կազմակերպուած* Ֆրանսահայ Կապոյտ Խաչի Առնուվիլի մասնաճիւղին կողմէ:

27 *Մայիս, Չորեքշաբթի երեկոյ, ժամը* 20·30*ին,* Առնուվիլի Սինէմա «Էտէն»ի *մէջ:*

*Կը ներկայացուի Ալֆորվիլի խումբին կողմէ ԱՐՇԻՆ ՄԱԼ ԱԼԱՆ (զուարթ օփերէթ):*

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Հերթական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի գիշեր, Քատէի սրահը:*

*Կը խօսի Տիկ. ԱՅՎԱԶԵԱՆ:*

*Շատ այժմէական նիւթ մը՝* «Ստախօսութիւնը մանուկին մօտ»:

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, RUE THOUIN

*Հոգեհանգստեան պատարագ ի յիշատակ բանակի զօրավար*

**Julien Dufieux**ի

*(Նախկին պատուիրակ և հրամանատար Կիլիկիոյ մէջ): Այս Կիրակի առաւօտ ժամը* 10·30*ին:*

Կը պատարագէ ՏԵՐ. ԿԱՐԱՊԵՏ Ծ. Վ. ԱՄԱՏՈՒՆԻ:

*Կը հրաւիրուին ողբացեալ հրամանատարին յիշատակը յարգողները:*

### ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ
### ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ. ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ
ՕԴԱՍՈՒՆ ՊԱՐՏԷԶԻՆ ՄԷՋ

*Կիրակի, Յունիս 21, ժամը 15էն – 22*
*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ, ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ*

*Ծոխ պիւֆէ, մատչելի գիներով, առատ ըմպելի եւ աւանդական* «շիշ քէպապ»:

Մուտք 100 փրանք

*ԽԻՍՏ ԿԱՐԵՒՈՐ*

200*հոգինոց բացօթեայ ճաշ մը նախատեսուած է կէսօրին, անձ գլուխ 800 ֆրանք ճաշ եւ մուտք: Կը խնդրուի սեղանները կանխաւ ապահովել: (Դիմել Աղքատախնամի գրասենեակը,* 32 Րիւ տը Թրէվիզ, հեռաձայն ՓՐՕ. 77-73):

### Կ'ՈՒԶՈՒԻ

*Երիտասարդ հայ օրիորդ մը, կրթուած, որ գիտնայ մեքենագրել (*տաքթիլօ*): Դիմել* անձամբ *«Յառաջ»ի վարչութեան:*

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ
## 41րդ ՏԱՐԵԴԱՐՁԸ

30 Մայիս, Շաբաթ գիշեր, ժամը 8·30ին ՓԱՐԻԶԻ 6րդ ԹԱՂԱՊԵՏԱՐԱՆԻՆ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**Place St Sulpice Métro : St Sulpice**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ՝ ԸՆԿ. ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ

ԿԸ ԽՕՍԻՆ՝ Պ. Կ. ՓՕԼԱՏԵԱՆ, ԸՆԿ. Կ. ՄԵՀԵԱՆ *եւ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ*

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻ ՅԱՅՏԱԳԻՐԸ.—*

**Mlle. Guislaine de Monceau, Violon**
**Mlle. Gisèle de Monceau, Violoncelle**
**Mlle. Bertile Huguet, Harpiste**
1er Prix de Conservatoire de Paris

*Պիտի նուագեն առանձին եւ միասնաբար ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԳԵՐ*

*ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ.— Պ. ԱՐՏԱՇԷՍ ԳՄԲԷԹԵԱՆ եւ ԸՆԿ. ՎԻԳԷՆ ԹՈՐՈՍԵԱՆ*

Հայկական պարեր Հ. Յ. Դ. Նոր Սերունդի խումբին (Պանթէօ) կողմէ:

*Նուագախումբ՝ ՏԷՏԷՃԵԱՆ, երգիչ ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ*

*Գեղարուեստական բաժնէն ետք կը սկսին պարերը մինչեւ առաւօտ*

*Առատ եւ ճոխ պիւֆէ:* *Մուտք 300 ֆրանք*

### ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ
*ՄԱՐՍԷՅԼ*

Գրող, հրապարակագիր, ազգային դէմքեր՝ Ռ. ԶԱՐԴԱՐԵԱՆ, Գ. ԽԱԺԱԿ, Է. ԱԿՆՈՒՆԻ, ՎՌԱՄԵԱՆ:

*Այս Չորեքշաբթի երեկոյ ժամը 21ին, Պոմոնի Հայ եկեղեցւոյ սրահին մէջ:*

*Կը նախագահէ Պ. ՎԱՐԴԱՆ ՊԱՆՏԻԿԵԱՆ:*

*Կը խօսին՝ Պ. ՎԱՀՐԱՄ ՄԻՍԹԻՔ եւ ուրիշներ:*

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Տէր եւ Տիկին Տոքթ. Գուրգէն Մեծատուրեան և զաւակները, Օր. Շուշան Մեծատուրեան կը ծանուցանեն թէ ողբաց. Տիկին ԱՂԱՒՆԻ ՄԵԾԱՏՈՒՐԵԱՆի մահուան առաջին տարելիցին առթիւ հոգեհանգստեան մասնաւոր պաշտօն պիտի կատարուի այս Երեքշաբթի առաւօտեան ժամը 10ին, Փարիզի Հայոց եկեղեցին,* 15 Րիւ Ժան Կուժօն:

*Կը հրաւիրուին յիշատակը յարգողները:*

ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ
ՀԱՅ ԹԱՏՐԵՐԳՈՒԹԵԱՆ

### Ա. ՏԻՐՎԱՆԶԱԴԷԻ
*ԾՆՆԴԵԱՆ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ*

SALLE PAUL FARALICQ
21. Rue Yves Toudic, Faris - Métro Répuplique

Երկուշաբթի, Յունիս 8, ժամը ճիշդ 20·45ին:

*Մասնակցութեամբ՝ Փարիզահայ թատրոնի լաւագոյն արուեստագէտներուն:*

### ԴԵՐԱՍԱՆ ԳԷՈՐԳ ՏԷՐՎԻՇԵԱՆ
*Կը ներկայացնէ եւ կը խաղայ*

### ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ

*Դրամ չորս արար,* Ա. Տիրվանզադէի:
*Բեմադրութիւն*Տիկ. ԱՆՆԱ ԲՈՒԴԱՂԵԱՆի
*Կը մասնակցին.—* Քնար Ազնաւուր, Բերկրուհի Դաւիթեան, Նոյեմի Շահինեան եւ Հայկուհի Խտշեան, Տրդատ Նշանեան, Նուրհան Մարգարեան, Ս. Սուրէնեան, Ն. Պշտիկեան, Օ. Սարաֆեան, եւ Արտաշէս Գմբէթեան:

*Մուտքի գիները՝ սովորական:*

*Դիմել՝* Հր. Բալուեան գրատունը, 43, Րիւ Րիշէ, Փարիզ:

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

### ԵՂԱՆԱԿԻ ԱՄԵՆԱՇՔԵՂ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

կազմակերպուած

ՍԱՄՈՒԷԼ – ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԾՆՈՂՔՆԵՐՈՒ ԵՒ ՄՈՒՐԱՏ – ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԵԱՆՑ ՄԻԱՑԵԱԼ ՈՒԺԵՐՈՎ:
ԿԻՐԱԿԻ, 7 ՅՈՒՆԻՍ, ԺԱՄԸ 16էն ՍԿՍԵԱԼ
ՊԱՐԱՆՑԻԿ ԵՐԵԿՈՅԹ, ԺԱՄԸ 20էն ԵՏՔ
վարժարանի դալարագեղ պարտէզներուն մէջ:

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Փոթորիկ խումբի ժողովը այս Հինգշաբթի երեկոյ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին:*

### ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷ՛Ք

*Մարսէյլի Ամասիոյ Հայր. Միութեան կազմակերպած պաշտպանողութեան, դէպի Սէն Զաչարիի պաղ աղբիւրը, 7 Յունիս Կիրակի ամբողջ օրը: Օթոքարի համար արձանագրուիլ այժմէն, Պ. Տ. Զօրէքեանի մօտ,* 5 Ավընիւ Քամիյ Փէլըթան:

### Կ'ՈՒԶՈՒԻ

*Հաշուապահուհի մը, որ գիտնայ մեքենագրել, եւ հաշուապահութեան ամէն գործողութեանց տեղեակ ըլլայ:*

*Դիմել՝*

ÉTB. O. B.
83, Rue d'Aboukir, Paris

### ԼԻՈՆԻ ԵՒ ՇՐՋԱՆԻ ՀԱՅՈՒԹԵԱՆ
### —— ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ ——

### ՏՊԱՐԱՆ "ՏԱՐՕՆ"

20, Avenue des Cottages
CALLUIRE (Rhône)

*Կը ստանձնէ հայերէն եւ ֆրանսերէն ամէն տեսակ տպագրական մաքուր գործեր:*

*Արագ գործառնութիւն, գիւրամատչելի պայմաններ:*

*Առնել թիւ 8* թրօլէպիւսը *եւ իջնել* Սէն Քլէրի *(վերջին կայարանը):*

### ՍԵՆԵԱԿ ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Առանձին մէկու մը համար կահաւորուած կամ ոչ սենեակ մը եւ խոհանոց մը կը փնտռուի վարձու, Փարիզի կամ մօտակայ արուարձաններու մէջ: Դիմել «Յառաջ»ին:*

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Այս Կիրակի, տօն Կաթողիկէ եկեղեցւոյ Ս. Էջմիածնի, կը կատարուի Հայրապետական մաղթանք: Կը կատարուի նաեւ մասնաւոր Հոգեհանգիստ ողբացեալ Տիկին Արամ Թէքեանի յիշատակին :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ն. Պ. Հայ Սպայից Միութիւնը հրաւիրում է անխտիր բոլոր ներկայ լինելու այս Կիրակի, Փարիզի Հայոց եկեղեցում հոգեհանգստեան պաշտօնին, յարգելու համար յիշատակը Սարդարապատի, Բաշաբարանի, Ղարաքիլիսի եւ ուրիշ հերոսամարտերում 1918 Մայիսին, պատւոյ դաշտում ընկած հայ բանակի սպաների, ենթասպաների եւ զինուորների, որոնք Սպարապետ Նազարբէկեանի ընդհանուր հրամանատարութեամբ եւ քաջարի հայ ժողովուրդի միահամուռ ճիգերով պարտութեան մատնեցին դարաւոր թշնամու գերազանց ուժերը եւ փրկեցին հայրենիքը եւ Էջմիածնի Ս. Աթոռը :

×

Ողբացեալ Տիկին Ժպտուն Ոսկերիչեանի յիշատակին (ծնեալ Զուքասըզեան) մահուան տարելիցին առթիւ, Տիրան Ոսկերիչեան, Վահրիճ եւ Վարդանոյշ Կէօքճէեան կը ծանուցանեն կսկծալի սրտով որ իրենց յաւէտ անմոռանալի կնոջ եւ զաւկին՝ ողբ. ԺՊՏՈՒՆԻ մահուան Ա. տարելիցին առթիւ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի կիրակի առտու Մայիս 31ին Հայ. Առաք. Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին :

Իր յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ ըլլալ :

Յաւարտ արարողութեան, այցելութիւն պիտի կատարուի հանգուցեալի դամբարանին, Սիմըթիէր Փարիզիէն տը Փանթէն, 139րդ տիվիզիօն, 9րդ լինեը, թիւ 7, անթրէ տէ Փըթի Փոն :

×

Դպրոցասէր Տիկնանց Միութեան հիմնադրութեան 80ամեակին առիթով, յառաջիկայ կիրակի, 31 Մայիսին հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի անոր հիմնադիրներուն եւ բոլոր աշխատաւորներուն յիշատակին համար, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ :

×

Պ. Վահրամ Տէր Խաչատուրեան կը ծանուցանէ թէ այս կիրակի առաւօտ հոգեհանգիստ պիտի կատարուի Ալֆորվիլի Ս. Պօղոս Պետրոս եկեղեցին, իր ողբացեալ կնոջ՝

ՓԵՐՈՒԶ ՏԷՐ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻ

մէ հուան քառասունքին առթիւ :

Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները :

Այս առթիւ Պ. Տէր Խաչատուրեան եւ Պ. Զէրչեան 5000ական ֆրանք կը նուիրեն Հայ Մշակոյթի տան :

Ստանալ «Յառաջ»էն :

### ՀՐԱՒԷՐ ԸՆԴՀ. ԼԻՈՆԱՀԱՅ ԳԱՂՈՒԹԻՆ

Հայկ. Բ. Ը. Միութեան Լիոնի մասնաճիւղը, սիրով կը հրաւիրէ ձեզ, կարեւոր խորհրդակցական ժողովի մը, որ տեղի պիտի ունենայ այս Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, տեղւոյս Նորակառոյց եկեղեցւոյ սրահին մէջ, 295, Րիւ Պուալօ :

ԿԱՐԵՒՈՐ.— Միութեանս «Շինարար» թերթին յաջորդ թիւը նուիրուած պիտի ըլլայ մեր այս Ընդհ. Ժողովին : Ժողովը պիտի նկարուի եւ լայն մանրամասնութիւններով թերթին պիտի ուղարկուի, հրատարակութեան համար : Վարչութիւնս կը փափաքի տեսնել մեր բոլոր անդամներուն եւ համակիրներուն խմբանկարը իրենց կենսագրական գիծերով :

ԴԻՒԱՆ



### ԾԱԽՈՒ ԲՆԱԿԱՐԱՆ

Մէկ սենեակ եւ խոհանոց մը ժանթիյի, մեթրօ Փորթ տ'Իթալիի շատ մօտիկ, անմիջապէս տրամադրելի :

Դիմել Տիկին Թաթուլեանին գրաւոր, 21, RUE JULIEN-LACROIX. PARIS - 20e

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

## 41ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

30 Մայիս, Շաբաթ գիշեր, ժամը 8.30ին ՓԱՐԻԶԻ 6ՐԴ ԹԱՂԱՊԵՏԱՐԱՆԻՆ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**Place St Sulpice Métro : St Sulpice**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ՝ ԸՆԿ. ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ

ԿԸ ԽՕՍԻՆ՝ Պ. Կ. ՓՕԼԱՏԵԱՆ, ԸՆԿ. Կ. ՄԵՀԵԱՆ եւ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻ ՅԱՅՏԱԳԻՐԸ.—

ՋՈՒԹԱԿՈՎ.—
1.— Կանչէ կռունկ *Ալեքսանեան*
2.— Քուն եղիր պալաս *Կանանչեան*
3.— *Եւրոպական*

ԹԱՒ ՋՈՒԹԱԿՈՎ.—
1.— Մայր Արաքսի *Հ. Թորոսեան*
2.— Ալագեազ *Կոմիտաս*
3.— *Եւրոպական*

Ա. մրցանակ Փարիզի Պետ. Երաժշտանոցէն

**Mlle. Guislaine de Monceau, Violon**

**Mlle. Gisèle de Monceau, Violoncelle**

**Madame Monceau, Piano**

**Madame Brisset,**

Կ'ԵՐԳԷ (Զանգակներուն երգը) (*Լաքմէ*)

ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ.— Պ. ԱՐՏԱՇԷՍ ԳՄԲԷԹԵԱՆ եւ ԸՆԿ. ՎԻԳԷՆ ԹՈՐՈՍԵԱՆ

Հայկական պարեր Հ. Յ. Դ. Նոր Սերունդի խումբին (Պանեէօ) կողմէ :

Նուագախումբ՝ ՏԷՏԷՃԵԱՆ, երգիչ ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ

ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐԸ ԿԸ ՍԿՍԻՆ ԺԱՄԸ 11.30ԻՆ:

ORCHESTRE JEAN-CLAUDE PELLETIER
Vedette des disques Vogue

Առատ եւ ճոխ պիւֆէ : Մուտք 300 ֆրանք

## ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վալանսի Շրջ. Կոմիտէի, մասնակցութեամբ՝ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Շ. Միսաքեան» խումբին :

Այս Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, քաղաքապետարանի թատրոնին մէջ:

Կը նախագահէ ընկեր Մ. ՊՕՅԱՃԵԱՆ :

Կը խօսի ԸՆԿ. ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին Նոր Սերունդէն: Խմբերգ, մեներգ, պար, արտասանութիւն, կովկասեան պարեր Պօյաճեան եղբայրներու կողմէ :

Ճոխ պիւֆէ :

Մուտքը ազատ է :

## ՎԻԷՆԻ ՄԷՋ

Այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Սէրքըլ Կաթոլիկ սրահը:

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վիէնի կոմիտէի, մասնակցութեամբ Ֆ. Կ. Խաչի, Հայ Կամ. եւ Մարտիկներու Միութեան, Հ. Մ. Ը. Մ.ի եւ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի :

Կը նախագահէ Պ. Կ. ՏԷՐՄՈՅԵԱՆ :

Գեղարուեստական խնամուած բաժին :

Մեներգ, արտասանութիւն, պարեր եւ ուղերձներ :

Կիթառի վրայ պիտի նուագէ Նոր Սերնդական Արման Էգասեան :

Հայրենակիցներ.— 41 տարի առաջ, հայ ժողովուրդի արեան գնով ստեղծուեցաւ Հայաստանի անկախ անդրանիկ Հանրապետութիւնը: Ձեր ներկայութեամբ ազգ. նուիրական պարտականութիւն մը պիտի կատարէք՝ ոգեկոչելով յիշատակը բոլոր անոնց որոնք ինկան ազատագրական ճամբուն վրայ, իրականացնելով Հայուն դարաւոր երազը:

Մուտքը ազատ է:

## ԻՍԻԻ ՄԷՋ

Իսիի մէջ Յունիս 7ին:

### ԿԱՐԵՒՈՐ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան կազմակերպուած վիճակահանութիւնը տեղի պիտի ունենայ Մայիս 31ին: Հովանաւորութեամբ Լիոնի քաղաքապետարանի կարեւոր խորհրդական եւ ծանօթ հայասէր ՏՈՔԹ. ՊԱՐԻՏՈՆԻ:

Նոյն առթիւ չքեղ պարահանդէս մը կազմակերպուած է: Եկեղեցաշէն Տիկնանց Միութեան կողմէ: Ոչ մէկ ջանք խնայուած է զայն հաճելի ժամանց մը դարձնելու ներկաներուն: Տեղի պիտի ունենան խիստ գեղեցիկ անակնկալներ :

Պարահանդէս – վիճակահանութիւնը տեղի պիտի ունենայ Պրօնի հին քաղաքապետարանի կից՝ նոր եւ ընդարձակ Սէն Միշէլ Լաքրուա այլ անունով Լա Կլանէօզի մէջ :

Այժմէն ապահովեցէք ձեր տոմսերը : Անոնք որոնք տակաւին վիճակահանութեան տոմսեր չունին, կրնան եկեղեցւոյ գրասենեակէն գնել :

Կոչ կ'ուղղենք անոնց, որոնք տոմսակներ ունին հաճին, անոնց փոխարժէքը ղրկել ամսոյս մինչեւ 27ը:





Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ընդհ. ժողովը այս Կիրակի առաւօտ ժամը 10ին, սովորական հաւաքատեղին : Ներկայ կ'ըլլայ Կ. Կ. Ներկայացուցիչը : Կարեւոր օրակարգ :

### ՊԱՏԱՐԱԳ

Այս Կիրակի, Տօն Կաթուղիկէ Ս. Էջմիածնի: Հանդիսաւոր քառաձայն Ս. պատարագ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ:

Պիտի պատարագէ եւ քարոզէ Նորապըսակ Բարգէն Եպիսկ. ԱՊԱՏԵԱՆ, Հայրապետական Պատուիրակ Հարաւային Ամերիկայի :

Պիտի կատարուի Հայրապետական մաղթանք:

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը:

